## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ, Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ.— 28 տարի առանց Լենինի, Ստալինի առաջնորդությամբ, լենինյան ուղիով *(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)* . . . . . . . . . 1

Թվեր և փաստեր զրույցների համար

*Կոմունիզմի ստալինյան կառուցումները սովետական ժողովրդի պարծանքն են* . . . . . 36

Օգտագործիր զրույցի ժամանակ

Գ. ԱՂԱԲԱԲՅԱՆ.— *Երևան քաղաքի հատակագծման և վերակառուցման 15 տարվա պլանի նախագծի մասին* . . . . . . . . . . 39

Օգնություն ագիտատորներին

*Թեմաններ Վ. Ի. Լենինի մահվան 28-րդ տարեդարձի առթիվ կազմակերպվող զեկուցումների և զրույցների համար* . . . . . 47

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

# 28 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ՍՏԱԼԻՆԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹՅԱՄԲ, ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

### (Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

*28 տարի առաջ, 1924 թվականի հունվարի 21-ին վախճանվեց միջազգային պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ, մեծագույն մտածող ու ռևոլյուցիոներ, բոլշևիկների պարտիայի հիմնադիր ու իմաստուն ղեկավար, Սովետական պետության ստեղծող Վլադիմիր Իլյիչ Լենինը։*

*Վ. Ի. Լենինի մահվան կապակցությամբ ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն պարտիային ու մասսաներին ուղղած իր դիմումի մեջ գրել էր. «Դեռ երբեք Մարքսից հետո պրոլետարիատի ազատագրական մեծ շարժման պատմությունն առաջ չի քաշել մի այնպիսի հսկա մեծություն, որպիսին է մեր հանգուցյալ առաջնորդը, ուսուցիչը, բարեկամը»։*

*Մարքսը, Էնգելսը, Լենինը, Ստալինը*

կապիտալիզմը գնում է դեպի կործանում, սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերը Սովետական Միության գլխավորությամբ հաստատուն կերպով կանգնել է լենինիզմի դրոշի ներքո՝ ընթանալով Լենինի գծած ուղիով, օրավուր բարգավաճում ու ամրապնդվում է։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները, չին մեծ ժողովուրդը, Սովետական Միության ժողովուրդների եղբայրական օգնությամբ կառուցում են նոր, սոցիալիստական կյանք։

***

Վ. Ի. Լենինը հանդես եկավ 19-րդ դարի վերջերին, երբ Ռուսաստանը հղի էր սոցիալական ռևոլյուցիաներով, երբ ռևոլյուցիայի կենտրոնը փոխադրվել էր Ռուսաստան, որը հանդիսանում էր իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետը։

Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ պրոլետարական ռևոլյուցիան դարձավ օրակարգի հարց, Լենինը խնդիր դրեց՝ ստեղծել նոր տիպի, մարքսիստական-ռևոլյուցիոն պարտիա՝ այնպիսի պարտիա, որ արմատապես տարբերվի Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական պարտիաներից։ Լենինը պարտիան դիտում էր որպես բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից, կազմակերպված ջոկատը, որը զինված մարքսիզմի ռևո-



լյուցիոն թեորիայով, մասսաներին պետք է նախապատրաստի վճռական գրոհի ընդդեմ շահագործող տարրերի։

Դեռևս 900-ական թվականներից Լենինն անդուլ պայքար ծավալելով «էկոնոմիստների», մենշևիկների, տրոցկիստների և ամեն կարգի օպորտունիստների դեմ, հանճարեղորեն մշակեց նոր տիպի՝ մարքսիստական պարտիայի իդեոլոգիական, կազմակերպական, տակտիկական և թեորիական հիմունքները։ Այդ մեծ ու դժվարին գործում ընկեր Ստալինը Լենինի հավատարիմ զինակիցն ու օգնականն էր։ Բոլշևիզմի պատմական նախապատրաստությունը հաղթանակով պսակվեց. 1912 թվականի ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերենցիան վերջնականապես ձևավորեց նոր պարտիա՝ լենինյան պարտիան, բոլշևիկյան պարտիան։

Բոլշևիկների պարտիան, զինված սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան թեորիայով, աշխատավոր մասսաներին կազմակերպեց ու առաջնորդեց դեպի ցարիզմի ու կապիտալիզմի կործանումը Ռուսաստանում։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով, լենինիզմի հզոր լուսարձակի տակ սկսվեց մարդկային պատմության նոր դարագլուխ՝ կապիտալիզմի

կործանման և սոցիալիզմի հաղթանակի ղեկավարությունը:

Այդ մեծագույն ռևոլյուցիայի անմիջական ծնունդն էր Սովետական պետությունը, որի հիմնադիրներն են Լենինը և Ստալինը: Լենինյան հանճարը կանխագծեց մեր երկրում վիակատար սոցիալիստական հասարակության կառուցման հոյակապ պլանը և նրա իրականացման կոնկրետ ուղիները:

Զարգացնելով լենինիզմը, ընկեր Ստալինը մշակեց մի ամբողջական ու ավարտուն ուսմունք սոցիալիստական պետության մասին, նրա զարգացման փուլերի ու ֆունկցիաների մասին:

Ընկեր Ստալինը ուսուցանում է, որ սոցիալիստական հասարակության կառուցման հիմնական զենքը Սովետական պետությունն է, որը գոյություն կունենա նաև կոմունիզմի ժամանակ, եթե չի վերացված կապիտալիստական շրջապատումը:

Ընկեր Ստալինը մեծ Լենինի ամենահավատարիմ ու մերձավորագույն զինակիցն էր մինչև նրա կյանքի վերջը, իսկ Լենինի մահից հետո՝ նրա անմահ գործի անմիջական ու հանճարեղ շարունակողը, այսօրվա Լենինը:

«Բոլշևիկյան պարտիայի և Սովետական



կառավարության ամբողջ գործունեությունը մեծ Լենինի մահից հետո անցած բոլոր տարիներին,— ասում է ընկեր Բերիան,— ընթացել է մեր առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ: Ընկեր Ստալինը հանճարեղ խորաթափանցությամբ պարտիային ու ժողովրդին կողմնորոշում է ներքին և միջազգային կյանքի ամենաբարդ երևույթների մեջ և նշում հետագա զարգացման հեռանկարները: Ինչպես մեծ, այնպես էլ փոքր գործերի ամենօրյա ղեկավարման ասպարեզում ընկեր Ստալինի անսպառ եռանդը, Սովետական պետության գլխավոր խնդիրները որոշելու և մեր բոլոր ուժերը դրանց լուծմանն ուղղելու նրա հմտությունը Սովետական Միության ժողովուրդների համար ապահովում են մեծ հաղթանակներ կոմունիզմի կառուցման գործում»:

Լենինի մահվան սգո օրերին ՍՍՌՄ Սովետների 2-րդ համագումարում ընկեր Ստալինը բոլշևիկյան պարտիայի անունից մեծ երդում տվեց. բարձր պահել և մաքուր պահպանել պարտիայի անդամի վեհ կոչումը, աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը, պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան, բոլոր ուժերով ամրապնդել բանվորների ու

գյուղացիների դաշինքը, ամրացնել մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցությունը, ամրապնդել ու ընդլայնել Սովետական Ռեսպուբլիկաների Միությունը, ամրապնդել մեր Սովետական Բանակն ու Նավատորմը, ամրապնդել և ընդլայնել ամբողջ աշխարհի աշխատավորության ինտերնացիոնալ համերաշխությունը։ Սովետական ժողովուրդը՝ ընկեր Ստալինի գլխավորությամբ լիովին իրականացրեց մեծ Լենինի պատմական ավանդները։

Ընկեր Ստալինը զարգացնելով ու կոնկրետացնելով մի երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան թեորիան, հանգեց այն հանճարեղ եզրակացության, որ մի երկրում կարելի է կառուցել ոչ միայն սոցիալիզմ, այլև կոմունիզմ, կապիտալիստական շրջապատման պայմաններում. ընկեր Ստալինը մշակեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կոնկրետ ուղիները։ Այդ հիման վրա ստալինյան հնգամյակների ընթացքում ապահովվեց ՍՍՌՄ-ի ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը և կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը։ ՍՍՌՄ-ում հաղթանակեց սոցիալիզմը։

Ի. Վ. Ստալինը, 1946 թ. փետրվարի 9-ի նախընտրական ճառում ուրվագծեց Սովե-



տական երկրում կոմունիստական խաղաղ շինարարության հոյակապ ծրագիրը։ Այդ ծրագրի բաղկացուցիչ մասը հանդիսացավ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան (1946—1950 թ. թ.) հնգամյա պլանը։ Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը և սովետական մարդկանց անձնուրաց, խաղաղ, ստեղծագործական աշխատանքը ապահովեցին ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման պլանների կատարումն ու գերակատարումը։ Մեր երկրի համար 1951 թվականը հանդիսացավ սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի տարի։ Անցած տարվա ժողովրդա-տնտեսական պլանը կատարվեց և գերակատարվեց։ Արդյունաբերական արտադրանքը երկու անգամ գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը։

Արդյունաբերական արտադրանքի աճման համարյա երկու երրորդը արդյունք է աշխատանքի արտադրողականության բարձրացման, որը, ինչպես ուսուցանում է Վ. Ի. Լենինը, վերջին հաշվով ունի ամենակարևոր նշանակությունը կոմունիզմի հաղթանակի համար։

Անցած տարին նշանավորվեց նաև մեր սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքով։ Հաջողությամբ կենսագործվում է բնության վերափոխման ստալինյան պլանը։ Գերակատարվել է հանրային անասնապահության զարգացման եռամյա պլանը։ Աճում ու ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը։ Անշեղորեն մեծանում է ժողովրդական տնտեսության տեխնիկական զինվածությունը, ավելի և ավելի մեծ չափով են կիրառվում առաջավոր գիտության նվաճումները կոլտնտեսային արտադրության մեջ։

Հաջողությամբ է ընթանում կոմունիզմի հսկա կառուցումների՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական, Վոլգա—Դոն, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարությունը։ Այս տարի շահագործման կհանձնվի այդ կառուցումներից առաջինը՝ Վոլգա—Դոն ջրային ուղին։ Սովետական մարդիկ, լցված աշխատանքային մեծ եռանդով, կգերակատարեն ստալինյան իմաստուն նախագծումները և է՛լ ավելի կամրապնդեն ՍՍՌՄ-ի հզորությունը։

Լենինի—Ստալինի պարտիայի գլխավորությամբ այժմ իրականացվում է անցումը սո-



ցիալիզմից դեպի կոմունիզմ, ստեղծվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա։

Անընդհատ աճում է ՍՍՌՄ ազգային եկամուտը և այդ հիման վրա բարձրանում է բանվորների ու ծառայողների աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտը։ Սովետական կառավարությունն անցկացնում է մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցում։

Սովետական պետությունը ամեն տարի հսկայական գումարներ է ծախսում ժողովրդական լուսավորության վրա։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում այժմ սովորում են 2 միլիոն 720 հազար մարդ։ Միմիայն 1951 թ. բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումներն ավարտեցին 463 հազար երիտասարդ մասնագետներ։

Սովետական գիտնականները, առաջնորդվելով ընկեր Ստալինի ցուցումներով, հայրենի գիտությունը հարստացրին և հարստացնում են ժողովրդա-տնտեսական և պաշտպանական նշանակություն ունեցող մի շարք կարևորագույն գիտական պրոբլեմներ լուծելով։ Գիտության մի շարք բնագավառներում մեր գիտնականները գրավեցին առաջին տե-

րը համաշխարհային գիտության զարգացման մեջ։

Ծաղկում է սովետական գրականությունն ու արվեստը։ Անցած տարին նշանավորվեց արվեստի և գրականության գեղարվեստորեն բարձր մի շարք գործերի երևան գալով։

Սովետական ժողովրդի ձեռք բերած հաղթանակները տնտեսության և կուլտուրայի բնագավառում ամբողջ աշխարհի առաջ ցույց են տալիս սովետական սոցիալիստական հասարակության մեծագույն գերազանցությունը։

Կոմունիզմի կառուցման գործում բոլշևիկների պարտիան վճռական նշանակություն է տալիս մասսաների կոմունիստական դաստիարակությանը, մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդային։ Նա անդուլ պայքար է մղում մարդկանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացորդների լիկվիդացման համար, նացիոնալիզմի ու կոսմոպոլիտիզմի ամեն մի արտահայտության դեմ։ Պարտիան՝ զինված մարքս-լենինյան գիտությամբ, մասսաներին դաստիարակում է սովետական ջերմ հայրենասիրությամբ, ժողովուրդների եղբայրական բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։



Ժողովրդական լայն մասսաների մարքս-լենինյան դաստիարակության գործում բացառիկ ու անգնահատելի նշանակություն ունեցավ ընկեր Ստալինի «Մարքսիզմը և լեզվաբանության հարցերը» հանճարեղ աշխատությունը, որը մի իսկական ռևոլյուցիա է լեզվաբանության մեջ և ուղեցույց աստղ գիտության բոլոր բնագավառների հետագա զարգացման համար։

Մեր երկրում լենինիզմի հաղթանակի հետևանքով ծավալվել են այնպիսի հզոր շարժիչ ուժեր՝ ինչպես սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ-ի ժողովուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը։

Լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության հիման վրա կերտվեց ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը։ Այդ քաղաքականությունը ապահովեց բոլոր ժողովուրդների ո՛չ միայն քաղաքական իրավահավասարությունը, այլև տնտեսական ու կուլտուրական կյանքի զարգացման բարձր մակարդակը։ Ահա թե ինչու ՍՍՌՄ-ը դարձավ սոցիալիստական ազգերի անխախտ, միասնական մի ինտերնացիոնալ ընտանիք։

Լենինն ու Ստալինը սովորեցնում են սովետական մարդկանց՝ չհանգստանալ ձեռք բերած հաջողություններով, համարձակորեն բացահայտել աշխատանքում եղած թերությունները, միշտ հիշել, որ քննադատությունը և ինքնաքննադատությունը կարևորագույն միջոց են վերացնելու կոմունիզմի հաղթական շինարարության ուղու վրա եղած թերությունները ու խոչընդոտները։

***

Լենինիզմի դրոշի հովանու տակ սովետական մյուս ժողովուրդների հետ միասին ազգային վերածնունդ ապրեց նաև հայ ժողովուրդը։ Հայաստանը, որն անցյալում, և հատկապես դաշնակների տիրապետության ժամանակ, հանդիսանում էր սովի ու աղքատության երկիր, Սովետական իշխանության տարիներին դարձավ զարգացած արդյունաբերության, առաջավոր գյուղատնտեսության և բարձր կուլտուրայի երկիր։

Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունն անցած տարվա պլանները կատարեց ու գերակատարեց։ Սովետական Հայաստանի արդյունաբերության արտադրանքից ուղարկվում է Հեռավոր Սիբիր, Միջին Ասիա, Ուկրաինա և այլուր։ Հայաստանը կոմու-



նիզմի մեծ կառուցումներին տալիս է տրանսֆորմատորներ, կաբել, զանազան սարքավորումներ, բարձրորակ շինանյութ և այլն։

Աննախընթաց վերելք է ապրում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Հիմնովին վերափոխվել է Սովետական Հայաստանի գյուղը՝ դառնալով ունևոր ու կուլտուրական։ Կոլտնտեսային գյուղացիությունը, ոգեշնչված ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարությամբ, կիրառելով բարձր ագրոտեխնիկա և միչուրինյան գիտության նվաճումները, հասել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության ավելի բարձր մակարդակի։

Ծաղկում և բարգավաճում է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Ռեսպուբլիկայի գյուղերն ու քաղաքները լրիվին ապահովված են յոթնամյա և միջնակարգ դպրոցներով։ Հայաստանը, որ մինչև սովետական կարգերի հաստատումը չուներ և ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, այժմ ունի 17 ԲՈՒՀ, Գիտությունների ակադեմիա՝ տասնյակ ինստիտուտներով և հարյուրավոր գիտական աշխատողներով։ Աննախընթաց նվաճումների են հասել սովետահայ գրակա-

նությունն ու արվեստը, որոնք ամբողջովին ծառայում են կոմունիզմ կառուցող աշխատավորության դաստիարակության վեհ խնդիրներին։

Լենինն ու Ստալինը հայ ժողովրդի ազատարարներն են։ Հայ ժողովրդի անհուն սիրո և երախտագիտության արտահայտությունն են Սովետական Հայաստանի մայրաքաղաք ծաղկող Երևանում բարձրացող Լենինի բրոնզյա արձանը և Ստալինի վեհ մոնումենտ-քանդակը։

Հայ ժողովրդի կյանքում խոշորագույն իրադարձություն է Վ. Ի. Լենինի Երկերի 30 և Ի. Վ. Ստալինի Երկերի 13 հատորների հայերեն հրատարակությունը։ Մեր երկրի բոլոր ժողովուրդները, այդ թվում և հայ ժողովուրդը հնարավորություն ունեն Լենինի և Ստալինի հանճարեղ երկերը ուսումնասիրել մայրենի լեզվով։

***

Լենինիզմի գաղափարների մեծագույն հաղթանակը նոր ուժով դրսևորվեց ժողովրդական դեմոկրատիայի երկրների ստեղծման ու նրանց աննախընթաց զարգացման մեջ։

Սովետական Միության օրինակով ու ակ-



տիվ օժանդակությամբ, վիթխարի հաջողությունների են հասել ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան, որոնք կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ հաստատակամորեն սոցիալիզմ են կառուցում։ Ժողովրդական դեմոկրատիայի պետություններում արդյունաբերության նախապատերազմյան մակարդակը գերազանցվել է երկու-երեք անգամ։

Նվաճելով իր երկրի ազատությունն ու անկախությունը, հաջողությամբ նոր կյանք է կառուցում չին մեծ ժողովուրդը։ Իմպերիալիզմի տիրապետության ժամանակ Չինաստանի ամբողջ արդյունաբերության ավելի քան 90 տոկոսը գտնվում էր օտարերկրյա կապիտալի ձեռքում։ Իսկ այժմ արդյունաբերության առաջատար ճյուղերը պատկանում են ժողովրդական պետությանը։

Չինաստանում ժողովրդական իշխանությունը տասնյակ միլիոնավոր գյուղացիական տնտեսությունների հող է տվել։

Չին մեծ ժողովուրդը կոմունիստական պարտիայի և նրա առաջնորդ Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ գնում է դեպի նորանոր հաղթանակներ։

Դեմոկրատիայի և խաղաղության լագերում ամուր կերպով իր տեղն է գրավել Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորությունը, որը միասնական սոցիալիստական պարտիայի ղեկավարությամբ վերականգնում է ժողովրդական տնտեսությունը, հաստատակամորեն պայքարում ամբողջ գերմանական ժողովրդի կենսական շահերի համար՝ անկախ, միասնական, դեմոկրատական, խաղաղասեր Գերմանիայի համար։

Լենինիզմը, որպես գիտական կուռ թեորիա, հզոր զենք հանդիսացավ ամբողջ աշխարհի կոմունիստների համար, որոնք պայքարում են իրենց երկրների շահագործող դասակարգերի դեմ և մարտերում նվաճում աշխատավորների ազատագրությունը։

Բազմամիլիոն չին ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը ասում է. «Մենք երախտապարտ ենք Մարքսին, Էնգելսին, Լենինին և Ստալինին, որոնք մեզ զենք տվեցին։ Այդ զենքը գնդացիր չէ, այլ մարքսիզմ-լենինիզմը... Սովետական Միության կոմունիստական պարտիան մեր լավագույն ուսուցիչն է, որից մենք պետք է սովորենք»։

Հունգարիայի և Չեխոսլովակիայի, Լեհաստանի և Ալբանիայի, Ռումինիայի և Բուլղարիայի կոմունիստները կազմակերպելով ու գլխավորելով իրենց երկրներում աշխատավորության պայքարը, նրանց դաստիարակում են Լենինի գաղափարների ոգով, ամբողջ աշխարհի աշխատավորների եղբայրության և ինտերնացիոնալիզմի ոգով։



Այդ պատմական միսիան նոր դեմոկրատիայի երկրների կոմունիստները իրականացնում են դասակարգային սուր պայքարի պայմաններում։ Ամերիկյան, անգլիական իմպերիալիզմի գործակալները, ջախջախված դասակարգերի թափթփուկները, Տիտոյի տիպի լրտեսները, բանդիտները և պրովոկատորները ոչ մի սուր միջոցի առջև կանգ չեն առնում ձախողելու ժողովրդական դեմոկրատիայի երկրների զարգացումն ու ամրապընդումը։ Սակայն կոմունիստական պարտիաները, զինված Լենինի—Ստալինի պարտիայի փորձով, բացահայտում են նրանց նենգդիտավորությունները, ոչնչացնում թշնամուն, համախմբում են իրենց շարքերը և հաստատորեն առաջ ընթանում լենինյան ուղիով։

Գաղութային ու կախյալ երկրներում ծավալված ազգային-ազատագրական հզոր

շարժումը խարխլում է իմպերիալիզմի խորը թիկունքը։ Ճգնաժամի մեջ է կապիտալիստական աշխարհի գաղութային սիստեմը։ Իրականացել և իրականանում է լենինյան հանճարեղ կանխագուշակությունը, որ «Կռվի ելքը վերջին հաշվով կախված է նրանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաստանը և այլն կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը։ Իսկ բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթացքում արտասովոր արագությամբ ներգրավվում է կռվի՝ իր ազատագրման համար, այնպես, որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային կռիվը։ Այդ իմաստով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահոված է միանգամայն և անպայման»։

***

Լենինիզմը դարձել է խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի դրոշ ամբողջ աշխարհում։ Սովետական պետությունը, նրա ստեղծողներ Լենինի—Ստալինի ղեկավարությամբ իր գոյության հենց սկզբից հռչակեց խաղաղության քաղաքականություն ժողովուրդների



միջև։ 1917 թ. Հոկտեմբերյան պատմական օրը մեծ Լենինն ստորագրեց խաղաղության Դեկրետը։ Հետևողականորեն իրականացնելով լենինյան-ստալինյան խաղաղասիրական քաղաքականությունը, մեր երկիրը դարձել է խաղաղության հուսալի պատվարն ամբողջ աշխարհում։

ՍՍՌՄ-ի շուրջն է համախմբվել դեմոկրատիայի հզոր լագերը, որի ուժերը գնալով է՛լ ավելի են աճում ու ամրապնդվում։ Խաղաղության հզոր շարժումը համակել է աշխարհի ողջ պրոգրեսիվ մարդկությանը։ Դրա ցայտուն արտահայտությունն է հանդիսանում այն, որ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում մոտ 600 միլիոն մարդ ստորագրեց հինգ մեծ պետությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու Դիմումի տակ։ Այդ ստորագրությունները բազմամիլիոն մարդկանց վճռական բողոքի ցույցն են ընդդեմ ամեն մի ագրեսիայի, ժողովուրդների պատրաստակամության արտահայտությունը՝ պաշտպանելու խաղաղության գործը։ Ընկեր Ստալինը մատնանշել է. «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ։ Պատերազմը կարող է

դառնալ անխուսափելի, եթե պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծիքով մոլորեցնել ժողովրդական մասսաներին, նրանց խաբել և նրանց ներգրավել համաշխարհային նոր պատերազմի մեջ։

Ուստի խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։

Խաղաղության պահպանման ու ամրապնդման գործում խոշորագույն ներդրում է ընկեր Ստալինի պատասխանը «Պրավդա»-ի թղթակցին ատոմային զենքի վերաբերյալ։ Մերկացնելով ամերիկյան իմպերիալիստների «ատոմային» դիպլոմատիան, Ի. Վ. Ստալինը մատնանշում է. «ԱՄՆ-ի գործիչները չեն կարող չիմանալ, որ Սովետական Միությունը ոչ միայն դեմ է ատոմային զենքի գործադրմանը, այլև կողմնակից է նրա արգելմանը, կողմնակից է նրա արտադրության դադարեցմանը։ Ինչպես հայտնի է, Սովետական Միությունը մի քանի անգամ պահանջել է արգելել ատոմային զենքը, բայց նա ամեն անգամ մերժում է ստացել Ատլանտյան բլոկի տերություններից։ Այդ նշանակում է, որ մեր երկրի վրա ԱՄՆ-ի



հարձակման դեպքում ԱՄՆ-ի կառավարող շրջանները կգործադրեն ատոմային ռումբ։ Հենց այդ հանգամանքն էլ Սովետական Միությանն ստիպեց ունենալ ատոմային զենք՝ ագրեսորներին լիակատար պատրաստությամբ դիմավորելու համար»։

Լենինը բացառիկ մեծ ուժով մերկացրել է ամերիկա-անգլիական իմպերիալիզմի նողկալի կերպարանքն ու գազանային քաղաքականությունը։

Իր առաջին իսկ դեկրետում՝ հաշտության մասին, սովետական իշխանությունը բացեիբաց առաջարկեց բոլոր պատերազմող կողմերին արդարացի հաշտություն։ Անգլիական, ֆրանսիական կառավարողները, ամերիկյան իմպերիալիստների գլխավորությամբ մերժեցին սովետական իշխանության առաջարկը։

Մերկացնելով միջազգային իմպերիալիզմի այդ պարագլուխների ավանտյուրիզմը, Վ. Ի. Լենինը իր նշանավոր «Նամակ ամերիկյան բանվորներին» աշխատության մեջ գրում է.

«Հենց անգլո-ֆրանսիական և ամերիկյան բուրժուազիան չընդունեց մեր առաջարկը։ Հենց նա՛ հրաժարվեց նույնիսկ խոսել մեզ հետ ընդհանուր հաշտության մասին։ Հենց

նա՛ դավաճանաբար վարվեց բոլոր ժողովուրդների շահերի նկատմամբ, հենց նա՛ ձգձգեց իմպերիալիստական սպանդը»։

Վ. Ի. Լենինը ամերիկյան իմպերիալիզմը նշավակել է որպես ռուսական ազատության դահիճի ու խեղդողի, որպես Արևմտյան Եվրոպայի ժանդարմի։

«Պարզվեց,— ասել է Լենինը,— որ անգլիացիները և ամերիկացիները հանդես են գալիս որպես ռուսական ազատության դահիճներ ու ժանդարմներ, ինչպես այդ դերը կատարվում էր Ռուսաստանի դահիճ Նիկոլայ 1-ի օրոք, ոչ ավելի վատ այն թագավորներից, որոնք դահիճների դեր էին կատարում և խեղդում էին հունգարական ռևոլյուցիան։ Այժմ այդ դերը ստանձնել են Վիլսոնի գործակալները»։

Լենինը մատնացույց է արել անգլո-ամերիկյան իմպերիալիզմի գազանային բնույթը և կանխատեսել է նրա անխուսափելի կործանումը։

«Նրանք,— գրում է Լենինը,— ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների մասին— գլնում են ճնշելու կապիտալիզմից ազատության անցնող ժողովրդին, խեղդելու ռևոլյուցիան։ Եվ մենք բացարձակ վստահությամբ



ասում ենք, որ այդ հղփացած գազանը նույնպես կգլորվի անդունդը, ինչպես գլորվեց գերմանական իմպերիալիզմի գազանը»։

Ամերիկյան իմպերիալիզմի գիշատիչ, կողոպտչական բնույթը նոր ըկտիությամբ երևան եկավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ ԱՄՆ-ը անցավ պատերազմի լագերի գլուխ և դարձավ միջազգային ռեակցիայի օջախը։

Այն ժամանակ, երբ սոցիալիզմի ու դեմոկրատիայի երկրներում արագ թափով զարգանում են տնտեսությունն ու կուլտուրան, աճում է մասսաների կենսամակարդակը, ԱՄՆ-ում ու կապիտալիստական մնացած երկրներում նոր ուժով սրվում են ներքին և արտաքին հակասությունները, ամբողջ տնտեսությունը ենթարկված է ռազմականացման ու նոր պատերազմի նախապատրաստման։ Գնալով է՛լ ավելի են աճում թանկությունը, հարկերը, գործազրկությունը, ծայր աստիճան իջել է աշխատավոր մասսաների կենսամակարդակը։ Ամերիկա-անգլիական իմպերիալիստները իրենց երկրներում լիկվիդացնում են ձևական դեմոկրատական ազատությունների մնացորդները և հաստատում ֆաշիստական-դիկտատորա-

կան ռեժիմ։ Բռնված նոր պատերազմի հրահրման մոլուցքով, նրանք ընդլայնում են ագրեսիվ Ատլանտյան բլոկը, վերականգնում են գերմանական ու ճապոնական իմպերիալիզմը, ստեղծում են ռազմական նոր բազաներ աշխարհի բոլոր մասերում և փորձում ժողովուրդներին մղել համաշխարհային նոր սպանդանոց։ Կյանքը լրովին հաստատում է ամերիկյան իմպերիալիզմի, որպես ամենառեակցիոն, լկտի, արյունախում և կատաղի իմպերիալիզմի, լենինյան բնութագրումը։

Ամերիկյան իմպերիալիզմը, պայքար ծավալելով համաշխարհային տիրապետության հասնելու համար, բարբարոսական պատերազմ է մղում խաղաղասեր կորեական ժողովրդի դեմ։ Բայց անտարակույս է, որ ոչ միայն լիակատար կրախի կմատնվի ամերիկյան ինտերվենցիան Կորեայում, այլև կձախողվեն նրա զառանցական պլանները՝ համաշխարհային տիրապետություն հաստատելու մասին։

Սովետական Միությունը, հավատարիմ ժողովուրդների միջև խաղաղասիրական քաղաքականության պահպանման ու ամրապնդման գործին, հետևողականորեն ու վճռականորեն պայքար է մղում պատերազմի



հրահրման ամեն մի փորձի դեմ։ ՄԱԿ-ի յուրաքանչյուր սեսիայում և միջազգային ամեն մի խորհրդակցությունում Սովետական Միությունը մերկացնում է պատերազմի հրձիգների պլանները և ներկայացնում կոնկրետ առաջարկներ խաղաղության գործն ապահովելու համար։

ՍՍՌՄ-ի խաղաղասիրական քաղաքականությունը բխում է հենց սովետական հասարակական ու պետական կարգի էությունից, որին խորթ են ամեն տեսակի ագրեսիվ ու նվաճողական ձգտումներ։ Սովետական պետության այդ քաղաքականությունը ոչ մի ընդհանուր բան չունի բուրժուական պացիֆիզմի հետ և ակտիվ պայքար է մղում խաղաղության համար։ Անշեղորեն պաշտպանելով խաղաղության գործը, Սովետական Միությունը հենվում է իր տնտեսական ու ռազմական հզորության վրա։ Մեր երկրի ժողովուրդները զգաստ հետևում են կապիտալիստական երկրների ոտնձգություններին և պատրաստ են անձնազոհությամբ պաշտ-

պանելու իրենց սոցիալիստական Հայրենիքը ու կործանիչ հարված հասցնելու բոլոր ագրեսորներին։

Սովետական Կառավարության խաղաղասիրական քաղաքականությունը վայելում է աշխարհի պրոգրեսիվ մարդկության վստահությունն ու աջակցությունը։ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի ստեղծումը, Պրոֆմիությունների, Դեմոկրատական երիտասարդության ու Կանանց միջազգային ֆեդերացիաների կազմակերպումը, որոնք ներկայացնում են բազմամիլիոն մասսաների, ուժեղ հարված է իմպերիալիզմի լագերին։

Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը մեծ գոհունակությամբ ընդունեց ընկեր Ստալինի հղած ուղերձը Կոմինֆորմի (?) ... 



Խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի այս հոգատարությունը է՛լ ավելի է ամրապնդում ամբողջ երկրագնդի ժողովուրդների համոզմունքը խաղաղության լագերի անպարտելիության մեջ։

Պայքարը խաղաղության համար, պայքար է սոցիալիզմի, կոմունիզմի համար։ Եվ այդ մեծ պայքարի դրոշն է լենինիզմը, որը աշխարհի բոլոր ժողովուրդներին տանում է դեպի լիակատար ազատագրում։ Մեր դարաշրջանը լենինիզմի գաղափարների հաղթանակի դարաշրջանն է։ Այժմ բոլորը տեսնում են, որ կապիտալիզմի դարը մոտենում է իր վախճանին, որ բոլոր ճանապարհները տանում են դեպի կոմունիզմ։ Ապագան պատկանում է կոմունիզմին։ Մեծ Լենինի անմահ գործը կհաղթանակի ամբողջ աշխարհում։

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ
Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿԱՌՈՒՅՑՈՒՄՆԵՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐԾԱՆՔՆ ԵՆ

✪ *Սովետական բոլոր մարդիկ հսկայական ոգևորությամբ մասնակցում են կոմունիզմի մեծ կառուցումներին։ Աշխարհի և ոչ մի երկրի շինարարության պրակտիկայում չեն եղել այնպիսի պայմաններ, ինչպիսիք ստեղծված են ստալինյան դարաշրջանի մեծ կառուցումների մասնակիցների համար։ Սոցիալիստական հզոր ինդուստրիան նրանց զինում է աշխարհի ամենաառաջավոր տեխնիկայով, ճարտարապետական արվեստի նորագույն նվաճումներով։ Մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր ծայրերից բեռների անվերջ հոսանք է ձգվում դեպի Վոլգայի, Դնեպրի, Դոնի և Ամու-Դարյայի ափերը։ Ուղարկվում են ամեն տեսակի նյութեր ու մեքենաներ, գործիքներ, ջրանցքների ապագա շլյուզների սարքավորում և հիդրոէլեկտրակայանների մեխանիզմներ, որոնք*



*ձեռնարկությունները պատրաստել են ժամկետից շուտ։ Տասնյակ հազարավոր սովետական հայրենասերներ ցանկություն են հայտնել աշխատելու վիթխարի ջրանցքների տրասաներում և հզոր էլեկտրակայանների շինարարության վրա։ Ստալինյան դարաշրջանի հոյակապ կոթողները կառուցում է ամբողջ երկիրը։*

✪ *Իրենց մասշտաբներով և տեմպերով կոմունիզմի կառուցումները հավասարը չունեն համաշխարհային տեխնիկայի ասպարեզում, 5—7 տարում կառուցվելու է՝ 5 հզոր հիդրոէլեկտրակայան՝ սահմանված 4 միլիոն 210 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ, 9 խոշոր ամբարտակ՝ ավելի քան 35 կիլոմետր ընդհանուր երկարությամբ, ավելի քան 4 հազար կիլոմետր երկարություն ունեցող մագիստրալային, ջրատար և միացնող ջրանցքք և 8 խոշոր ջրամբար։*

✪ *Ստալինյան կառուցումները հագեցված են գիտության նորագույն մեխանիզմներով։ Այդ մեխանիզմների թվին են պատկանում՝ ժամում մեկ հազար խորանարդ մետր արտադրողականություն ունեցող հողահանիչներ, հզոր էքսկավատորներ, որոնցից յուրաքանչյուրը փոխարինում է 1500-ից մինչև 7 հազար հողափոր բանվո-*

րի։ Սովետական էքսկավատորային տեխնիկայի նորագույն նվաճումն է քայլող էքսկավատորը, որի շերեփի տարողությունն է 14 խորանարդ մետր։ Այդ էքսկավատորը 9 հարկանի շենքի բարձրություն ունեցող մի ահռելի կառուցվածք է։ Նա կազմըված է 60 հազար մասնիկից, կշռում է ավելի քան հազար տոննա, նրա վրա դըրված 44 մոտորները ունեն 6 հազար կիլովատ կարողություն, որը երեք անգամ գերազանցում է բոլոր այն էլեկտրասարքավորումների կարողությանը, որոնք աշխատում էին ցարական Ռուսաստանի գյուղատնտեսության մեջ։

✪ Ջրանցքների և հիդրոէլեկտրակայանների շինարարության վրա կատարվող հողային աշխատանքների ծավալը միլիարդի թիվ է կազմում, այն է՝ մեկ միլիարդ խորանարդ մետր։ Հանված այդ գրունտը եթե բարձվեր վագոնները, ապա դա կկազմեր մի այնպիսի երկարություն ունեցող գնացք, որը հասարակածում երկրագունդը կարող էր գոտևորել 25 անգամ։

✪ Միայն էլեկտրիֆիկացիայի ստալինյան հինգ նոր գիգանտները մեր սոցիալիստական Հայրենիքին կտան տարեկան 22 միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներ-



գիա։ Էներգիայի այդ քանակը փոխարինում է մոտ 50 միլիոն մարդու աշխատանքը։

✪ Կոմունիզմի մեծ կառուցումների շըրջանում եղած հողերի ոռոգումն ու ջրովի դարձնելը հնարավորություն կտա ցորենի տարեկան բերքն ավելացնել 500 միլիոն փթով, բամբակինը՝ 3 միլիոն տոննայով, բրնձինը՝ 30 միլիոն փթով, շաքարի ճակընդեղինը՝ 6 միլիոն տոննայով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելանա 2 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 9 միլիոն գլխով։ Գյուղատնտեսական արտադրանքի միայն այդ լրացուցիչ քանակը բավական է կերակրելու և հագցնելու 100 միլիոն մարդ։

✪ Վոլգան Եվրոպայի ամենախոշոր գետն է, որն ունի 3.700 կիլոմետր երկարություն։ Միջին ջրառատության պայմաններում տարեկան Վոլգայով հոսում է մոտ 250 խորանարդ կիլոմետր ջուր, որի քաշը հավասար է 1250 միլիարդ տոննայի։ Վոլգայի էներգետիկ ռեսուրսները, Կալինին քաղաքից մինչև Ստալինգրադ քաղաքը հոսանքի շրջանում, կազմում է ավելի քան 10 միլիոն կիլովատ և տարեկան կտան ավելի քան 30 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա միջին ջրառատության պայմաններում։

✪ Կույբիշևի հիդրոհանգույցի կառուցման ժամանակ կատարվելու է 150 միլիոն խորանարդ մետր հողային աշխատանք, բետոն և երկաթբետոն է արվելու 6 միլիոն խորանարդ մետր։ Եթե այդ բետոնից պատրաստվեր՝ 3 մետր բարձրությամբ և մեկ մետր հաստությամբ պատ, ապա այն կհասներ Մոսկվայից մինչև Բաքու (2.542 կիլոմետր)։

✪ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոկայանների էլեկտրաէներգիայի օգտագործումը երկրին հնարավորություն կտա տարեկան 20—25 միլիոն տոննա ածուխ և տորֆ տնտեսել, մի քանակություն, որի փոխադրման համար կպահանջվեր 20 հազար երկաթուղային գնացք։

✪ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի ամբարտակը 25 մետրով կբարձրացնի Վոլգայի ջրի մակարդակը։ Դրա հետևանքով կկազմվի մի ջրամբար, որը ամենախոշորը կլինի աշխարհում։ Այդ ջրամբարի երկարությունը կլինի 500 կիլոմետր, լայնությունը տեղ-տեղ՝ մինչև 40 կիլոմետր։ Ջրամբարի ընդհանուր ջրատարողությունը կկազմի 25 միլիարդ խորանարդ մետր։

✪ Անդրվոլգյան շրջանում ոռոգման միջոցով ցորենի մեկ հեկտարի բերքատվությունը կհասցվի մինչև 35 ցենտների։ Վոլ-



գայի երկու նոր հիդրոկայանների գոտում ոռոգվող հողերից ստացվող ցորենի ընդհանուր բերքը զգալիորեն ավելի կլինի ամբողջ Կանադայում ստացվող բերքից։

✪ Չափազանց մեծ է Վոլգա-Դոն ջրանցքի շինարարության ասպարեզում կատարված և ներկայումս կատարվող հիմնական աշխատանքների ծավալը, այն է՝ 164 միլիոն խորանարդ մետր հողային փորվածք ու լցվածք և 2 միլիոն 860 հազար խորանարդ մետր բետոնի շարվածք։ Վոլգա-Դոն ջրանցքի կառուցումը կավարտվի 1952 թվականին։ Պանամայի ջրանցքի շինարարության համարյա նույն ծավալի աշխատանքը (150 միլիոն խորանարդ մետր հող և 3,9 միլիոն խորանարդ մետր բետոն) կատարվեց ավելի քան 35 տարվա ընթացքում։

✪ Վոլգա-Դոն ջրանցքի գոտում կոռոգվի 750 հազար հեկտար և ջրով կդարձվի 2 միլիոն հեկտար հող։ Դոնի մագիստրալային ոռոգիչ ինքնահոս ջրանցքը վայրկյանում 250 խորանարդ մետր ջուր կստանա Ցիմլյանսկայա ջրամբարից։ Նրա երկարությունը լինելու է 190 կիլոմետր։ Ութ բաշխիչ ջրանցքների երկարությունը լինելու է 568 կիլոմետր։ Այդ ջրանցքների վրա պատ-

րաստվում է 140 էլեկտրապոմպային կայան։

✪ Հարավ-Ուկրաինական ջրանցքը Դնեպրից մեկ վայրկյանում ստանալու է 600—650 խորանարդ մետր ջուր, որը հինգ անգամ մեծ է այն ջրից, որ ստանում է Մոսկվայի անվան ջրանցքը։ Նախատեսված է Հարավ-Ուկրաինական ջրանցքից Սիվաշով Հյուսիս-Ղրիմյան ջրանցքը փոխադրել 200 խորանարդ մետր ջուր՝ մեկ վայրկյանում։ Նույնքան ջուր է թափվում Վոլգայի մեջ Կալինին քաղաքի շրջանում։

✪ Ուկրաինայի և Ղրիմի 3 միլիոն 200 հազար հեկտար անջրդի հողային ընդհանուր տարածությունից, որը կոռոգվի և ջրովի կդարձվի Կախովկայի հիդրոհանգույցի գործարկումից հետո, 200 հազարը Նիժնի-Դնեպրյան անբերրի ավազուտներն են։ Այդ ավազուտները յուրացնելուց հետո երկիրը լրացուցիչ կստանա տարեկան 500 հազար ցենտներ մրգեղեն, 900 հազար ցենտներ բանջարեղեն և 3 միլիոն ցենտներ խաղող։

✪ Մոլոչնայա գետի վրա կառուցվող վիթխարի ամբարտակը, որն ունենալու է 8 կիլոմետր երկարություն, 40 մետր բարձրություն ունեցող պատնեշ կկանգնեցվի ջրի առջև և կստեղծվի մի հսկայական ջրամ-



բար՝ 6 միլիարդ խորանարդ մետր ջրատարողությամբ։ Հարավ-Ուկրաինական ջրանցքի խորությունը տեղ-տեղ կհասնի 110 մետրի։

✪ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը Ամու-Դարյայից կստանա 350—400, իսկ հետագայում մինչև 600 խորանարդ մետր ջուր՝ մեկ վայրկյանում։ Մեկ տարվա ընթացքում այդքան ջրից կարող է 22 մետր խորություն ունեցող մի այնպիսի լիճ կազմվել, որի մակերեսը հավասար կլինի Արևմտյան Եվրոպայի ամենախոշոր՝ Ժնևի լճի մակերեսին (582 քառ. կիլոմետր)։

✪ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը և ավելի քան 50 հազար կիլոմետր երկարություն ունեցող հսկայական իրրիգացիոն ցանցը կենդանություն կտա մի վիթխարի տերիտորիայի՝ ոռոգելով 1 միլիոն 300 հազար հեկտար հող և ջրովի դարձնելով ավելի քան 7 միլիոն հեկտար անապատ։

✪ Ամու-Դարյայի ջուրն իր գույնով նման է կաթնախառն սուրճի, որովհետև նա ողողում և իր հետ բերում է մեծ քանակությամբ տիղմ։ Ամու-Դարյան տարեկան ողողումտանում է ավելի քան 100 միլիոն տոննա կարծր մասնիկներ, որոնք մեծ քանակությամբ կալի, կիր և լուծված աղեր են պա-

թունակում իրենց մեջ: Այսպիսով, Ամու-Դարյայի ջրերը հիանալի պարարտանյութ են դաշտերի համար:

✪ 1957 թվականին, Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի կառուցումից հետո, Թուրքմենիայի բամբակի ցանքատարածությունը մեկ և կես անգամ մեծ կլինի Արգենտինայի, Իրանի և Մեքսիկայի բամբակի ցանքատարածությունից՝ միասին վերցրած: Թուրքմենիայի բամբակագործական նոր բազաները տարեկան կտան 2 միլիոն տոննա ընտիր բամբակ, որը մոտ երեք անգամ կգերազանցի ռևոլյուցիայից առաջ ամբողջ Ռուսաստանում ստացվող բամբակի քանակը: Բամբակի այդ քանակից կստացվի 5 միլիարդ 500 միլիոն մետր գործվածք, որից ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր բնակչին կընկնի մոտ 30 մետր:

✪ Ցոթ տարի հետո, Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի շրջանում կհիմնվեն անտառներ՝ մոտ 500 հազար հեկտար տարածության վրա:

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ ՀԱՏԱԿԱԳԾՄԱՆ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ 15 ՏԱՐՎԱ ՊԼԱՆԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

Սոցիալիստական շինարարության անցած 31 տարիների ընթացքում ձեռք բերված տնտեսական և կուլտուրական աննախընթաց նվաճումների մեջ խոշոր են Սովետական Հայաստանի հաջողությունները մեր քաղաքների զարգացման գործում: Սակայն ավելի մեծ են մեր քաղաքների հետագա բարգավաճման ու բարեկարգման հեռանկարները: Առանձնապես հոյակապ է Երևանի հեռանկարը:

1951 թվականի դեկտեմբերի 24-ին, Երևանի Քաղաքային Սովետի սեսիան քննեց և հաստատեց քաղաքի վերակառուցման առաջիկա 15 տարվա պլանավորման նախագիծը: Քաղաքի հատակագծման գլխավոր նախագիծը, որի իրականացումը նախատեսված է ժողովրդա-տնտեսական պլանով, կոչված է լուծելու տնտեսական, շինարարա-

կան, սանիտարական և ճարտարապետական մի ամբողջ շարք խնդիրներ։

Շինարարական ռեսուրսների առկայությունը, աշխարհագրական բարենպաստ դիրքը, տեղանքի նպաստավոր ռելեֆը, բացառիկ նպաստավոր կլիմայական պայմանները և մի շարք այլ գործոններ՝ Երևան քաղաքի զարգացմանը տալիս են եզակի, նրան հատուկ բնույթ։

Քաղաքի զարգացման համար անհրաժեշտ նոր տերիտորիաների ընտրությունը, որն իր արտացոլումն է գտել հատակագծման գիտականորեն հիմնավորված գլխավոր պլանում, նկատի ունի քաղաքի զարգացումը հյուսիս և հյուսիս-արևմուտք ընկած տերիտորիաներում։ Դա հետագայում բարենպաստ պայմաններ է ստեղծելու քաղաքային բնակչության աշխատանքի, հանգստի, ինչպես նաև կուլտուրական զբաղմունքի համար։

Հատակագծման պլանում հատուկ տեղ է տրված բնակելի գոտու, արդյունաբերության, կանաչապատ տարածությունների տեղադրմանը՝ մեր երկրում շինարարության և քաղաքաշինության սկզբունքների կենսագործմանը, ելակետ ունենալով բոլշևիկների պարտիայի և Սովետական իշխանության



մշտական հոգատարությունը մարդու նկատմամբ։

Արդյունաբերության և ժողովրդական տնտեսության բազմաթիվ այլ ճյուղերի հեռանկարային աճման հետ միասին հատակագծման պլանի նախագծի համաձայն, քաղաքի տերիտորիայի ընդարձակման կապակցությամբ, զգալիորեն ավելանալու է նաև քաղաքի բնակչության թիվը։

Արդյունաբերությունը հիմնականում տեղադրվում է Բերիայի, Միկոյանի ռայոններում և նոր կազմակերպվող մերձքաղաքային Քանաքեռի ռայոնում։ Քաղաքի կենտրոնական ռայոնը նախատեսվում է վերակառուցել, բազմահարկ՝ երեքից հինգ և ավելի հարկեր ունեցող շենքերով։ Բերիայի, Միկոյանի և Քանաքեռի ռայոններում հիմնականում կառուցվելու են երկու, երեք հարկանի շենքեր, իսկ այդ շրջանների կենտրոնական մասերում և հիմնական մագիստրալներում, նախատեսվում է կառուցել բազմահարկ շենքեր։

Քաղաքի ծայրամասերում (հիմնականում անհատական շինարարության շրջաններում) կառուցվելու են մեկ և երկու ու կես հարկանի շենքեր։ Այսպիսով, երեքից մինչև հինգ և ավելի հարկանի շենքերը պետք է կազմեն

ամբողջ բնակելի տարածության 60 տոկոսը, երկու և երեք հարկանի շենքերը՝ 20 տոկոսը, ցածրահարկ՝ մեկ հարկանի և մեկ ու կես հարկանի շենքերը՝ 20 տոկոսը։ Անհատական կառուցողներին հատկացվում է տնամերձ հողամաս 300-ից մինչև 600 քառակուսի մետր։

Քաղաքի արդեն կազմավորված կենտրոնում՝ Վ. Ի. Լենինի անվան հրապարակի շրջակայքում կառուցվելու են հասարակական և ադմինիստրատիվ կազմակերպությունների համար խոշոր շենքեր։ Լայնացվելու են քաղաքում գոյություն ունեցող հրապարակները և ստեղծվելու են նորերը։ Տեղական հրապարակներ են ստեղծվելու Բերիայի և Միկոյանի ռայոններում, հարավ-արևմտյան ռայոնում (Կիրովի անվան գործարանի 3-րդ մաս) և Քանաքեռի ռայոնում։

Նախատեսվում են քաղաքային հետևյալ հիմնական մագիստրալները.

ա) Ստալինի անվան պողոտա, որը հարավի ուղղությամբ շարունակվելու է մինչև «Հաղթանակ» կամուրջը։ բ) Լենինի անվան պողոտա։ գ) Միկոյանի անվան պողոտա, որը շարունակվելով իրեն կմիացնի Արտաշատի խճուղին։ դ) Օրջոնիկիձեի անվան պողոտա, որը շարունակվելու է մինչև 26 կո-



մունարների անվան փողոցը, կապելով հարավային արդյունաբերական ռայոնը քաղաքի կենտրոնի հետ։ ե) Աբովյանի անվան փողոց, որը հյուսիսում հասնում է մինչև Քանաքեռի խճուղին, իսկ հարավում՝ Միկոյանի պողոտային, կապելով քաղաքի կենտրոնը Քանաքեռի, Նոր Արեշի և Երկաթուղային կայարանի հետ։ զ) Թամանցիների անվան փողոց, որը հարավ-արևմտյան ռայոնի հրապարակը (Կիրովի անվան գործարանի 3-րդ մաս) միացնելու է Օրջոնիկիձեի պողոտայի հետ և ապա շարունակվելով միանալու է Միկոյանի անվան պողոտայի հետ։ է) «Հաղթանակ» կամուրջի մոտից սկսվող Նոր մագիստրալ, որը Բերիայի ռայոնը միացնելու է քաղաքի կենտրոնի հետ։ ը) Լերմոնտովի անվան և Բաղրամյանի անվան փողոցներ, որոնք Միկոյանի ռայոնը միացնելու են քաղաքի կենտրոնի հետ։ թ) Նալբանդյանի անվան փողոցի լայնացում՝ Ազիզբեկովի անվան հրապարակից մինչև Լենինի անվան հրապարակը։ ժ) Նոր ստեղծվող կիսաշրջանաձև մագիստրալներ, որոնք իրար հետ են միացնելու հարավային, հարավ-արևմտյան, արևմտյան (Բերիայի) և հյուսիսային (Միկոյան) ռայոնները, ինչպես

նաև կիսաօղակաձև բուլվարային փողոց՝ քաղաքի կենտրոնում։ ժա) Զանգու գետի առափնյա փողոց։

Զգալիորեն ավելացվելու են կանաչապատ տարածությունները հասարակական օգտագործման վայրերում՝ կառուցվելու են նոր պարկեր, պուրակներ, զբոսավայրեր, ընդարձակվելու և բարեկարգվելու են եղածները։ Ընդարձակվելու է նաև քաղաքի շուրջը եղած անտառային տերիտորիան։

Ստեղծվելու են կուլտուրայի և հանգստի նոր պարկեր, ինչպես օրինակ՝ գոյություն ունեցող անտառապատ տարածության բազայի վրա «Հաղթանակ» պարկը, պարկեր՝ քաղաքի կենտրոնական ռայոնի հյուսիսային մասում, Զանգվի աջ ափին, Բերիայի անվան ռայոնում,«Կոզեր» բլրի շրջանում և այլն։

Նախատեսվում է կանաչապատել փողոցները, արդյունաբերական ձեռնարկությունների շրջակայքը, բակերը, Զանգվի կիրճը, Քանաքեռի և Նորքի բարձունքները, ստեղծել սանիտարա-պաշտպանական կանաչապատ գոտիներ։

Քաղաքի կառուցման տերիտորիայում պահպանվելու են Դալմայի թանկարժեք այգիների ու խաղողի այգիները։



Քաղաքի աճմանը համապատասխան՝ լայն զարգացում է ստանալու տրամվայի, տրոլեյբուսների և ավտոբուսների հաղորդակցության ներկայիս ցանցը։ Նախատեսվում է առաջիկա տարիներին տրամվայի նոր գիծ անցկացնել Բաղրամյանի փողոցից մինչև Բերիայի անվան ռայոնի կենտրոնը, Զանգվի վրա կառուցվող նոր կամուրջի վրայով, ինչպես նաև Միկոյանի ռայոնում՝ Կոմիտասի անվան փողոցից մինչև էլեկտրական լամպերի գործարանը։ Տրամվայի գիծ է անցկացվելու Կոմսոմոլի անվան պարկից մինչև Նոր Արեշ։ Լայն զարգացում է ստանալու նաև տրոլեյբուսային հաղորդակցությունը։ Անց են կացվելու տրոլեյբուսային նոր մագիստրալներ, առաջին հերթին Ստալինի անվան պողոտան Միկոյանի ռայոնի հետ կապող գծերը՝ մինչև Կոմիտասի անվան փողոցը։ Նախատեսված է ավելացնել նաև ավտոբուսային հաղորդակցության տրասսան քաղաքի սահմաններում և շրջակայքում։

Քաղաքի ջրամատակարարման գործն այնպես է պլանավորված, որ Կաթնաղբյուրի (Կրխբուլաղի) և Արզնիի աղբյուրներից ստացվող ջուրը լրիվին կապահովի քաղաքի նաև նոր կազմակերպվող ռայոնների պա-

*հանջը։ Ընդլայնվում է քաղաքի կոյուղացանցը։*

*Քաղաքի էլեկտրամատակարարումը հենվելու է Սևան-Զանգու կասկադի հիդրոէլեկտրակայանների վրա։*

*Քաղաքի հարավ-արևմտյան մասում (Կիրովի անվան գործարանի 3-րդ մաս) Զանգու գետում ստեղծվում է ջրամբար՝ 75 հեկտար տարածությամբ։ Ջրամբարի համար Զանգվի վրա կառուցվող ամբարտակը միաժամանակ կծառայի որպես կամուրջ։*

*Սրանք են Երևան քաղաքի վերակառուցման և բարեկարգման առաջիկա 15 տարիների պլանի հիմնական, բնավ ոչ լրիվ, դրույթները։*

*Կենսագործելով Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի ցուցումները բարգավաճող մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը Սովետական Միության առաջավոր քաղաքների շարքը կմտնի իր հիանալի փողոցներով, շենքերով, պարկերով, պուրակներով, հրապարակներով, ստալինյան դարաշրջանին արժանի մոնումենտներով։*

Գ. ԱՂԱԲԱԲՅԱՆ

Երևան քաղաքի գլխավոր ճարտարապետ

---



# ԹԵՄԱՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 28-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը:
2. Լենինը բոլշևիկյան մեծ պարտիայի ստեղծողն ու առաջնորդն է:
3. Լենինը աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրն ու ղեկավարն է:
4. Լենինը գիտության մեծ կորիֆեյն է:
5. Լենինի և Ստալինի մեծ բարեկամությունը:
6. 28 տարի առանց Լենինի, ընկեր Ստալինի ղեկավարությամբ՝ լենինյան ուղիով:
7. Լենինիզմը աշխատավորների կոմունիստական դաստիարակության հիմքն է:
8. Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինիզմի գաղափարների մարմնացումն է:

*հանջը։ Ընդլայնվում է քաղաքի կոյուղացանցը։*

*Քաղաքի էլեկտրամատակարարումը հենվելու է Սևան-Զանգու կասկադի հիդրոէլեկտրակայանների վրա։*

*Քաղաքի հարավ-արևմտյան մասում (Կիրովի անվան գործարանի 3-րդ մաս) Զանգու գետում ստեղծվում է ջրամբար՝ 75 հեկտար տարածությամբ։ Ջրամբարի համար Զանգվի վրա կառուցվող ամբարտակը միաժամանակ կծառայի որպես կամուրջ։*

*Սրանք են Երևան քաղաքի վերակառուցման և բարեկարգման առաջիկա 15 տարիների պլանի հիմնական, բնավ ոչ լրիվ, դրույթները։*

*Կենսագործելով Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի ցուցումները բարգավաճող մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը Սովետական Միության առաջավոր քաղաքների շարքը կմտնի իր հիանալի փողոցներով, շենքերով, պարկերով, պուրակներով, հրապարակներով, ստալինյան դարաշրջանին արժանի մոնումենտներով։*

*Գ. ԱՂԱԲԱԲՅԱՆ*

Երևան քաղաքի գլխավոր ճարտարապետ

---



# ԹԵՄԱՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 28-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը:
2. Լենինը բոլշևիկյան մեծ պարտիայի ստեղծողն ու առաջնորդն է:
3. Լենինը աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրն ու ղեկավարն է:
4. Լենինը գիտության մեծ կորիֆեյն է:
5. Լենինի և Ստալինի մեծ բարեկամությունը:
6. 28 տարի առանց Լենինի, ընկեր Ստալինի ղեկավարությամբ՝ լենինյան ուղիով:
7. Լենինիզմը աշխատավորների կոմունիստական դաստիարակության հիմքն է:
8. Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինիզմի գաղափարների մարմնացումն է:

9. Լենինի—Ստալինի պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող ուժն է՝ կոմունիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարում:

10. Լենինը և Ստալինը ամերիկյան իմպերիալիզմի գիշատչական, թալանչիական քնույթի մասին:

11. Լենինը և Ստալինը արդարացի ու անարդարացի պատերազմների և սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության մասին:

12. Լենինիզմը ամբողջ աշխարհի աշխատավորների պայքարի դրոշն է՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի:

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

